թէ դոհացուցիչ է Թորէզի առողջական վիճակը, մինչդեռ հիմա Մոսկուա փոխադրութիւնը կը հաստատէ ճիշդ հակառակը:

Յատուկ օդանաւի մը դալուն եւ հիւանդը Մոսկուա փոխադրելուն համար դիմում կատարուած է Մոսկուայի Ֆրանսական դեսպանատան միջոցով եւ արտաքին նախարարութիւնն է որ տըւած է արտօնութիւնը: Ռուսական օդանաւին մէջ դարմանատան մը յատուկ բոլոր յարմարութիւնները պիտի սարքուին: Օդանաւին հետ պիտի գան ռուս բժիշկներ եւ հիւանդապահուհիներ: Հիւանդին հետ պիտի երթան փրոֆ. Տավիտէնքով Ֆրանսայի բժիշկ Տոքթ. Ռոք, ինչպէս նաեւ Պ. Մ. Թորէզի կինը՝ երեսփոխան Տիկին Ժանէթ Վէերմէշ: Հրատարակուած տեղեկութեանց համաձայն, Տիկինը ինք խնդրած է որ Մոսկուա փոխադրեն իր ամուսինը:

╳ Թորէզի հիւանդութեան պատճառով, կուսակցութեան ընդհ. քարտուղարութիւնը առժամապէս պիտի վարէ օգնականը, Ժաք Տիւքլօ, իսկ Ազգ. Ժողովին մէջ համայնավար խմբակցութեան վարիչը պիտի ըլլայ Պ. Պեյու, Մարսէյլի երեսփոխանը, որ 1940 Դեկտեմբեր 19ին բանտէն նամակ մը ուղղած էր Փեթէնի, ունկնդրութիւն մը խնդրելով, ինչպէս կը գրեն տեղական թերթերը:

## Քորէայի պատերազմը եւ ուրիշ հոգեր

Ամերիկեան պատուիրակութիւնը Ապահովութեան Խորհուրդէն պիտի պահանջէ քուէարկել որոշում մը, որուն համաձայն Քորէայի մէջ ՄԱԿի ուժերուն դէմ կռուող բոլոր չինական կարմիր զօրամասերը պէտք է քաշուին անմիջապէս: Չի կարծուիր, սակայն, թէ այս մասին վերջնական որոշում մը տրուի, մինչեւ որ Նիւ Եորք հասնի չինական կարմիր պատուիրակութիւնը, լսելու համար իրենց դէմ եղած ամբաստանութիւնը:

╳ Չին համայնավար կառավարութիւնը Նիւ Եորք պիտի ղրկէ 9 անդամներէ բաղկացած պատուիրակութիւն մը, որ հոն երթալով պիտի մասնակցի Ապահովութեան Խորհուրդին առջեւ Ֆորմոզայի հարցին շուրջ ըլլալիք վիճաբանութեանց: (Այս կառավարութիւնը կը մեղադրէ Մ. Նահանգները, թէ բնի ուժով Ֆորմոզա մտած են): Այս առթիւ պիտի լսեն նաեւ իրենց դէմ ուղղուած մեղադրանքը: Պատուիրակութեան նախագահն է՝ Մոսկուա կրթուած զօրավար մը: Անդամներուն մէջն է նաեւ կարմիր Չինաստանի արտաքին նախարարը: Նկատելով որ պատուիրակութիւնը Եւրոպայի ճամբով Ամերիկա պիտի մեկնի, ամերիկեան կառավարութիւնը հրահանգած է Փրակայի իր դեսպանատան վիզա տալ անդամներուն: Նիւ Եորքի մէջ հսկողութիւն պիտի չկատարուի անոնց վրայ: Ամերիկեան իշխանութիւնները պիտի գոհանան տրուելիք պատուոյ խօսքով, թէ Նիւ Եորքի շրջանակէն դուրս պիտի չելլեն:

╳ ՄԱԿի քաղաքական յանձնախումբը ընդունեց եւկոսլաւեան առաջարկ մը, որուն համաձայն, յարձակման ենթարկուած երկիր մը, ինքնապաշտպանութեան համար միջոցներ ձեռք առած ատեն, պէտք է պատրաստ ըլլայ դադրեցնելու կռիւը, եթէ յարձակողն ալ դադրեցնէ:

╳ Մարաջախտ Թիթօ յայտարարեց, թէ Եւկոսլաւիա պիտի յարգէ ՄԱԿի բոլոր որոշումները, եթէ համայնավար Չինաստանը յարձակում գործած պետութիւն մը հռչակուի: Ի հարկին զինեալ ուժ պիտի տրամադրէ ՄԱԿին:

╳ Օրերէ ի վեր Քորէայի ռազմաճակատին վրայ տիրող հանդարտութիւնը մտահոգութիւն կը պատճառէ ՄԱԿի հրամանատարութեան: Կը կարծուի թէ ռազմաճակատին վրայ համախըմբուած 60.000 չինացի համայնավարներ ուժեղ յարձակողականի մը պիտի անցնին, ՄԱԿի ճակատը ճեղքելու համար:

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ



ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՓՍԱԿԻ.— Սեւանի Ց. Կ. Խաչի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է հազար ֆրանք, Տէր եւ Տիկին Փ. Յովհաննէսեանէ, փոխան ծաղկեպսակի, Պ. Արսէն Փափազեանի մահուան առթիւ:

# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԱՑՈՅՑԸ

## Սենթ Էթիէնի մէջ

12 Նոյեմբեր կիրակի ժամը 15էն 24, Ռէփուպլիքէններու սրահը, 16 rue J. B. David:

Կը խօսի ընկեր ՎԱՀԱՆ ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆ

Մուտքը ազատ է:

## Սէն Շամոնի մէջ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. «ՎԱՐՈՒԺԱՆ» ենթակոմիտէի:

Այս շաբաթ իրիկուն, ժամը 8ին, Salle Jeanne d'Arc:

Կը նախագահէ ընկ. ՆԻԿՈՂՈՍ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ

Կը խօսի ընկեր ՎԱՀԱՆ ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆ

Մուտքը ազատ է:

## «ՅԱՌԱՋ»ի 25ամեակին առթիւ

Շնորհակալութեամբ ստացանք, Լիոնէն Բ. գումար մը, 2800 ֆրանք, ընկ. Մ. Միրզէի ձեռամբ:

Նուիրատուներն են Տիկին Սրբուհի Արապեան 300 ֆրանք, Յակոբ Ռուբէնեան, Ազատ Պալեան (Վիէնէն), Յարութիւն Գասպարեան, Ջաքէոս Վարժապետեան, Սահակ Նաճարեան 500ական ֆրանք:

Նոյնպէս Նիսէն Անդրիկեան եղբայրներ շընորհաւորելով թերթիս քսանըհինգամեակը հազար ֆրանք կը տրամադրեն:

### ԽՆՋՈՅՔ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Լիոնի «Սիամանթօ» խումբին, այս կիրակի կէսօրէն վերջ, ժամը 3էն մինչեւ 11, Յոյներուն սրահին մէջ, 5 rue Bonnefoy:

Գեղարուեստական բաժին:





ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԻՍԻ.— Հ. Յ. Դ. «Զաւարեան» կոմիտէի դասախօսական ժողովը այս շաբաթ իրիկուն ժամը 8.30ին, Խրիմեան սրահը: Կը խօսի ընկեր ՍԱՀԱԿ ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆ:

ՀԱՄԱԶԳԱՅԻՆԻ ընդհ. ժողովը 18 Նոյեմբեր, շաբաթ գիշեր, Le Cadet սրճարանի վերնայարկը:

Հ. Յ. Դ. ՄԱՐՍԷՅԼԻ Շրջ. կոմիտէն ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ Գէորգ Չաւուշ խումբը այս շաբաթ իրիկուն ժամը 8ին: Ներկայ կ'ըլլայ ընկեր ՅԱԿՈԲ ՊԱՊԻԿԵԱՆ:

ՄԱՐՍԷՅԼ.— Պոմոնի Կապոյտ Խաչի մասնաճիւղի վարչութիւնը ժողովի կը հրաւիրուի այս շաբաթ կէսօրէ վերջ ժամը 4ին: Ներկայ պիտի ըլլան Շրջ. կոմիտէի ներկայացուցիչները:

«ԱՐԵՒՄՈՒՏՔ»ի ԼՍԱՐԱՆԻՆ հերթական դասախօսութիւնը՝ այս երկուշաբթի երեկոյ, սովորական հաւաքատեղին: Դասախօս՝ Պ. Լեւոն Շիրեան: Նիւթը՝ Տիգրան Մեծի ծաղրանկարը Րէնաքի «Միհրդատ Եւպատոր» գրքին մէջ:









**Imprimerie DER AGOPIAN**, 17 rue Damesme – (13)

**Le Gérant : A. NERCESSIAN**

պանութիւնը եւ ի՞նչ պիտի արժէ այդպիսի ձեռնարկ մը :

2.— Ի՞նչ համեմատութեամբ պիտի աւելնայ զէնքի տակ առնուած նորագիրներու թիւը, այդ ձեռնարկը իրագործելու համար :

3.— Կարելի՞ է իրապէս պաշտպանել Արեւմտեան Եւրոպան :

4.— Եթէ Ռուսերը ունին հիւլէական ռումբեր, որոնցմով կրնան ռմբակոծել մեր երկիրը, կրնա՞ն նաեւ ռմբակոծել Եւրոպայի մեր ցամաքահանման նաւահանգիստները եւ այդպէսով մեկուսացնել մեր բանակները :

5.— Ի՞նչ ձեւ պիտի առնէ երրորդ աշխարհամարտ մը:

6.— Ինչպէ՞ս պիտի շահինք զայն :

Պ. Թէֆթ կը մեղադրէ նաեւ ամերիկեան կառավարութիւնը ըսելով թէ ան զինուորական յանձնառութիւններ ստանձնած է, առանց նախապէս չօչափելու հանրային կարծիքի տրամադրութիւնները :

Պ. Թէֆթ, որ սկիզբէն կուսակից է մեկուսացման (չմիջամտել Եւրոպայի գործերուն), պիտի պահանջէ ամբողջովին վերաքննել ամերիկեան քաղաքականութիւնը: «Եւրոպան մեր պաշտպանութեան առաջին գիծն է., կը հարցնէ: Մեր բոլոր հաւկիթները միեւնոյն կողովին մէ՞ջ պիտի դնենք, այնքան ծանրօրէն կառչելով Ատլանտեանի դաշինքին եւ արեւմտեան Եւրոպայի զինուորական օգնութեան »:

Իրագեկ անձեր, նոյնիսկ հանրապետական թերթերը այս առթիւ դիտել կուտան թէ կուսակցութիւնը պիտի չհետեւի Թէֆթի քաղաքականութեան եւ թէ անփոփոխ կը մնայ արտաքին նախարարութեան ուղեգիծը :

### ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԱՆԵԼԻ ՄԱՏՆՈՒԱԾ

Վերջին լուրերու համաձայն, բրիտանական կառավարութիւնը կը շարունակէ խստօրէն մաղել խաղաղութեան կուսակիցներու համագումարին պատգամաւորները: Կարգ մը թերթեր կը գրեն թէ Անգլիա մտնելու արտօնուած չեն նաեւ Պ. Ժոլիօ – Քիւրի, Ֆրանսայի հիւլէական ուժի հաստատութեան նախորդ վերատեսուչը, իր կինը, նախկին նախարարներ Իվ Ֆարժ եւ Փիէռ Քոթ, Աշխատանքի Դաշնակցութեան ընդհ. քարտուղարներէն Ալէն Լըլափ:

Համագումարին կազմակերպիչները կը խոստովանին թէ ծանր վնասներ պիտի կրեն այս արգելքներուն հետեւանքով: Նախատեսուած 2500 պատգամաւորներէն հազարը եթէ չկարենան Անգլիա մտնել, 12 հազար սթերլին պիտի կորսուի: Համագումարին ծախքը հաշուած են քան հազար սթերլին մէջն ըլլալով Շէֆիլտի քաղաքապետարանին սրահին վարձքը, հազար սթերլին: Սենեակներ վարձուած են ոչ միայն 2500 պատգամաւորներու, այլեւ 700 մասնագէտներու, թարգմաններու, սղագիրներու, մեքենագիրներու եւն. համար: Այս բոլոր հաշիւները պիտի վճարուին :

Լոնտոնի օդակայանին մէջ բազմաթիւ պաշտօնեաներ հսկողութիւն կը կատարեն գիշեր ցերեկ, հարցաքննելու համար ուղեւորները: Առջի օր երկու կիներ եւ երեք այրեր վար դրուեցան աւելի քան չորս ժամ: Նոյնքան տեւեց 18 Պուլկարներու հարցաքննութիւնը: Այս պատգամաւորներէն իր կիներ էին, մէկը՝ եպիսկոպոս, Աման – տրիտ Եռնա (Սոֆիայէն), արուեստագէտ մը՝ Վլատիմիր Տիմիթրով, հանքագործ մը: Կիներէն մէկը՝ Սարա Լնչեվա, պատերազմի մէջ կորսնցուցած է իր չորս զաւակները :

Առջի օր զրոյց կը շրջէր թէ համագումարը Փոալսյի մէջ պիտի գումարուի. բայց անմիջապէս հերքուեցաւ :

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԸՆԿԵՐՎԱՐԱԿԱՆ կուսակցութիւնը կորսնցուց իր արժէքաւոր անդամներէն մէկը, Ժան Պիոնտի: Ծանրապէս վիրաւոր՝ ինքնաշարժի արկածի մը հետեւանքով, դժբախտ երեսփոխանը մեռաւ առջի օր: Մասնակցած է դիմադրական ճակատի պայքարներուն, յետոյ Գերմանիա աքսորուած: Ազատագրութենէն վերջ, եղաւ խորհրդական ներքին գործերու նախարարութեան, յաջորդական դահլիճներու մէջ :

ՊՈՒԼԿԱՐԻՈՅ Ազգ. ժողովը ազգայնացուց երկրին անտառները :

ԹԻՊԷԹ Ազգաժողովին օգնութիւնը խնդրեց, կարմիր Չինաստանի արշաւանքին դէմ :

ՄԱՐՄՆԱԿԱՆ պատիժները բոլորովին ջնջելու համար, բանաձեւ մը ներկայացուց Ազգաժողովին խնամակալութեան խորհուրդը: Բանաձեւը կը վերաբերի բոլոր գաղթավայրերուն :

ՆՈՊԷԼԻ ԳՐԱԿԱՆ մրցանակին 1949ի եւ 1950ի տարեկանները բաժնուեցան առջի օր: Յիսուն թեկնածուներու մէջ, ընտրուեցան անգլիացի փիլիսոփայ Պերթրընտ Րասըլ եւ ամերիկացի վիպագիր Ուիլեըմ Ֆոքնըր: Իւրաքանչիւր մրցանակի գումարն է 11.000 սթերլին: Անգլիացի փիլիսոփան ընտրելով, Շուէտի Ակադեմիան մէկդի դրած է զուտ գրական գիծը, որ կը շարունակուէր 23 տարիէ ի վեր :

## Հ.Յ.Դ. Նոր Սերունդի տարեդարձը Մարսէյլի մէջ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Շրջ. Վարչութիւնը մեծ պատրաստութեամբ կը տօնէ իր հիմնարկութեան 6րդ տարեդարձը, Շաբաթ 18 Նոյեմբեր, Rue de Grignanի ընդարձակ սրահին մէջ :

Կը նախագահէ Պ. Տ. ԹԷՔԷԵԱՆ

Կը խօսին ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ եւ ընկեր ՀՐԱՉ ՏԱՄՆԱՊԵՏԵԱՆ (Լիոնէն):

## «ՅԱՌԱՋ»ի 25ամեակին առթիւ

Շնորհակալութեամբ ստացած ենք ընկեր Խ. Թէլեանէ (Մարսէյլ – Պոմոն) 2000 Փրանք, իր կնոջ մահուան տասներորդ տարեդարձին առթիւ: (Նոյն առթիւ 2000 Փրանք ալ «Հայ–Բոյժ»ի):

Հ. Մ. Մ.Ի ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ – ԹԱՏՐՈՆԸ

Այսօր, կիրակի, ժամը 15էն 24, Իսիի քաղաքապետարանի սրահը, Ave. Victor Cresson, Իսի լէ Մուլինօ :

ՎԱԼԱՆՍ.— Այրի Տիկին Տիրուհի Միքայէլեանի զառնալէտ մահուան առթիւ, Վալանսի Կապոյտ Խաչի մասնաճիւղը իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ, Տէր եւ Տիկին Միքայէլեաններու, Տէր եւ Տիկին Մաքսուտեաններու եւ պարագաներուն: Այս առթիւ Կապոյտ Խաչի մասնաճիւղին եղած են հետեւեալ նուէրները, փոխան ծաղկեպսակի: Տէր եւ Տիկին Գէորգ Միքայէլեան, Տէր եւ Տիկին Մաթէոս Մաքսուտեան, Տէր եւ Տիկին Յակոբ Կօշկակարեան, Տէր եւ Տիկին Յակոբ Վարժապետեան (Լիոն) հազարական Փրանք, Օր. Մարի Ջամբեան եւ Տիկին Եպրուհի Ջիլինկիրեան 500ական Փրանք: Տէր եւ Տիկին Մաքսուտեան նոյն առթիւ կը նուիրեն հազար Փրանք Կարմիր Խաչին, հազար Փրանք Ազգատախնամին:

ԿԸ ՓՆՏՌՈՒԻ.— Օննիկ Տեմճեան, Իզմիրցի, այժմ Յունաստան հաստատուած, կը փնտռէ եղբօր զաւակը՝ Փօլ Տեմճեան որ ինը տարեկանին Ֆրանսացի քոյրերու հետ Թունուզ մեկնած է: Իր վերջին հասցէն եղած է 10 rue P. Kellerman, Tunis: Տեղեկացնել Աթէնք, «Ազատ Օր»ի խմբագրութեան, 20a rue Vouli:









ՅՈՒՇԱՏԵՏՐ

Հ. Յ. Դ. ԵԳԻՊՏԱՑԻ կոմիտէն ժողովի կը հրաւիրէ «Րաֆֆի» խումբի բոլոր ընկերները, այս չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին Շօփ տիւ Նօռի մէջ: Պարտաւորիչ ներկայութիւն :

ՈՒՐՖԱՅԻ Հայր. Միութեան ընդհ. ժողովը՝ այս հինգշաբթի ժամը 8.30ին, Café Régent (մէթրօ Քատէ) :

ԱՐՄԵՆԻԱ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ (Մարսէյլ) տարեկան մեծ պարահանդէսը Դեկտեմբեր 9ի շաբաթ գիշեր, Clubի մէջ, 51 rue Grignan: Կը խնդրուի չխաչաձեւել :

«ԱՐԵՒՄՈՒՏՔ»Ի ԼՍԱՐԱՆԻՆ հերթական դասախօսութիւնը՝ այս երկուշաբթի երեկոյ, սովորական հաւաքատեղին: Դասախօս՝ Պ. Լեւոն Շիրեան: Նիւթը՝ Տիգրան Մեծի ծաղրանկարը Ռէնաքի «Միհրդատ Եւպատոր» գրքին մէջ:

ՎԱՐԴԱՆԱՆՑ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ 1500ԱՄԵԱԿԻ առթիւ նոյն օրուան յիշատակին պիտի ներկայացուի Ս. ՄՈՒՐԱՏԵԱՆ վարժարանին մէջ ԱՒԱՐԱՅՐԻ ԴԻՒՑԱԶՆԵՐԸ (ողբերգութիւն) :

Մանրամասնութիւնները յաջորդով :









Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme – (13)

Le Gérant : A. NERCESSIAN

թիւնն ու 1936ի դաշինքը կը հակասեն իրարու :

3) Երկար ժամանակ պիտի անցնի սպասելով, որ Եգիպտոս ի վիճակի ըլլայ իր ուժերով պաշտպանելու Սուէզի ջրանցքը, որովհետեւ Անգլիա ոչ միայն կը մերժէ զէնք ծախել Եգիպտոսին, այլեւ իր ազդեցութիւնը ի գործ կը դնէ, որպէսզի ուրիշ երկիրներ ալ մերժեն զէնք հայթայթել :

Հակառակ եգիպտական այս տեսակէտներուն, Մեծն Բրիտանիա կը գտնէ որ Եգիպտոս, 1936ի դաշինքը ինքն իրեն պատռելու իրաւունքը չունի : Բրիտանական զինուորական խարիսխները աւելի քան անհրաժեշտ են այսօր, երբ խորհրդային վըտանգը աւելի ակներեւ է Միջին Արեւելքի ամբողջ շրջանին մէջ : Իսկ Սուտանի մասին ասկէ առաջ տրուած խոստումները — նախ ինքնավարութիւն, ապա անկախութիւն — փոխելու ոչ մէկ հիմ կը գտնեն Բրիտանացիները :

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԱՐԵՒԵԼԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ բոլշեւիկ նախագահը, Վիլհելմ Փիք, որ 74 տարեկան է, իր կարգին Մոսկուա փոխադրուեցաւ, հանգստանալու եւ դարմանուելու համար :

22 ԱՆԳԼԻԱՑԻ ԵՐԵՍՓՈԽԱՆՆԵՐ— ձախ աշխատաւորականներ — բանաձեւ մը ներկայացուցին, առաջարկելով որ կառավարութիւնը նախաձեռնութիւնն ստանձնէ Չորս Մեծերու խորհրդաժողով մը սարքելու եւ միջազգային խնդիրները քըննելու համար : Երկրորդ բանաձեւով մը նոյն երեսփոխանները կ՚առաջարկեն որոշ կէտի մը վրայ կեցնել Ազգաժողովի ուժերուն յառաջխաղացութիւնը Քորէայի մէջ ; որպէսզի կարելի ըլլայ արագօրէն վերջացնել պատերազմը :

ՄԻԱՑԵԱԼ ԵՒՐՈՊԱՅԻ խորհուրդին տեղեկաբերը, Կի Մոլէ որ Ֆրանսայի ընկերվարական կուսակցութեան ընդհ. քարտուղարն է, յանկարծ հրաժարեցաւ տեղեկաբերի պաշտօնէն : Այս առթիւ յայտարարութիւն մը հրատարակեց ուր կ՚ըսէ թէ ի դերեւ ելած են իր յոյսերը՝ Եւրոպայի միացման մասին : Ինչպէս գիտէք, Մեծն Բրիտանիա բացասական դիրք մը բռնած է այս ծրագրին հանդէպ : Երէկ, շաբաթ, Ստրազպուրկի մէջ բացուեցաւ ընդհ. ժողովը որ պիտի տեւէ մէկ շաբաթ :

ԱՆՁՆԱՍՊԱՆ ԵՂԱՒ հռչակաւոր հոպիտը, (քլոուն), Սերեթթի, մեթրոյի կառախումբին տակ նետուելով Պոյարիսի կայարանին մէջ : Մարմինը ջարդուփշուր եղած էր : 52 տարեկան էր, ծնած՝ Սարաթով (Ռուսիա) եւ Երրորդ Ֆրաթելլինին կը համարուէր : Վերջերս տխուր վիճակ մը ունէր, երբեւ հետեւանք անգործութեան Ֆրաթելլինի երէցի, իր ութսունամեայ մտերիմին անդարմանելի հիւանդութեան :

ԸՆԿԵՐԱՅԻՆ ԱՊԱՀՈՎՈՒԹԵԱՆ վարչութիւնը 45 միլիառ Ֆրանքի բաց մը պիտի ունենայ : Կը խորհուի 16 առ հարիւրէն 19ի բարձրացնել անդամատուրքը եւ ուրիշ յաւելումներ կատարել ...

ՊԵՏԱԿԱՆ ԳՈՅՔԵՐԷՆ օգտուելու համար, զանազան խարդախութիւններ կատարուած են վերջին տարիներու ընթացքին : Շատեր իբրեւ պատերազմի արկածեալ ներկայանալով, ահագին քանակութեամբ գոյքեր ստացած են : Մինչեւ հիմա կատարուած քննութիւնները կը հաստատեն թէ անհետացած են 600 դաշնակներ, 16.000 գրամեքենաներ, հարիւրաւոր պատկերներ, գորգեր, կահկարասիներ, արծաթեղէն սպասներ եւն. :

ԱՏԼԱՆՏԵԱՆԻ Խորհուրդին 12 արտաքին նախարարները ժողով պիտի գումարեն Պրիւքսէլի մէջ Դեկտեմբերի երկրորդ շաբթուն, զբաղելու համար Գերմանիոյ վերազինման հարցով :

ՀՆԴԿԱՉԻՆԻ ֆրանսական մարզպանը Պ. Փինեօն յայտարարեց, թէ Հանոյը պարպելու խօսքն անգամ չի կրնար ըլլալ : «Ընդհակառակն մենք յարձակման պիտի անցնինք, անմիջապէս որ ի վիճակի ըլլանք առնելու այդ քայլը» :— Ըմբոստները նոր յարձակման անցած են 50 քիլմ. երկարութեամբ Ֆրանսական սահմանապահ դիրքերուն վըրայ Թոնքինի շրջանին մէջ, Հանոյէն 25 քիլմ. դէպի հարաւ արեւմուտք : — Ազգ. պաշտպանութեան խորհուրդի խորհրդակցութիւնները կը շարունակուին Փարիզի մէջ : Կը նախատեսուի թէ Հնդկաչինի զինուորական հրամանատարութիւնը պիտի չփոխուի, իսկ միւս կողմէն նոր ուժեր եւ զինամթերք պիտի ղրկուին զօրացնելու համար կուիր ըմբոստներուն դէմ :

600.000 ԿԵՂԾ տոլար, 450.000 պելժիական ֆրանք եւն. շրջաբերութեան հանուած էին դրամանենգներու խմբակի մը կողմէ, Ֆրանսայի մէջ.— համագումար 200 միլիոն Ֆրանք : Ոստիկանութիւնը յաջողեցաւ ձերբակալել կեղծարարները :

ԴԵՐԱՍԱՆ ԹՐԱԳՕՇԻ ներկայացումը այս կիրակի ժամը 3ին, Ալֆորվիլի մէջ, քաղաքապետարանին սրահը : Կը ներկայացուի ՇԱՀ ԻՍՄԱՅԻԼ :

# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ 60ԱՄԵԱԿԸ

## Կըրնոպլի մէջ

Կիրակի, 26 Նոյեմբեր :
Բանախօս՝ ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ
Մանրամասնութիւնները յաջորդով :

ԱՅՆՃԱՐԻ «ՅԱՌԱՋ» ՎԱՐԺԱՐԱՆԻՆ ՀԱՄԱՐ

Փարիզէն Պ. Մուրատեան 500 ֆրանք կը նըւիրէ Այնճարի ՅԱՌԱՋ վարժարանին :

ՀԱՅԿԱԿԱՆ ԾԷՍՈՎ ՊԱՏԱՐԱԳ

Այս կիրակի առաւօտ ժամը 9.45ին Trinitéի եկեղեցւոյ մէջ, բացառիկ պատարագ զոր կը մատուցանէ ՊՕՂՈՍ ԱՐՔ. ՔԻՐԷՃԵԱՆ, առաջնորդ Կ. Պոլսոյ հայ կաթողիկէ համայնքին : Սիրով կը հրաւիրուի հայ հասարակութիւնը :

## Հ. Մ. Մ.Ի ՄՐՑՈՒՄՆԵՐԸ

Այս կիրակի ժամը 13ը քառորդ անցած եւ 15ին, Հ. Մ. Մ.ը կը մրցի Meudonի խումբին դէմ Privaux Stade Municipalի մէջ : Ժամադրավայր կէսօրը քառորդ անցած, Իսիի սովորական հաւաքավայրը :

Անշուշտ մարզասէր հայրենակիցները պիտի փութան քաջալերել մեր երիտասարդ մարզիկները :

ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.— Հ. Յ. Դ. Տէսինի կոմիտէն իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ Տէր եւ Տիկին Լիւլէճեաններուն եւ բոլոր պարագաներուն, իրենց աղջկան Օր. ԱՐՄԵՆՈՒՀԻի կսկծալի մահուան առթիւ եւ փոխան ծաղկեպսակի հազար ֆրանք կը նուիրէ «Յառաջ»ի տարածման ֆոնտին :



## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՇԱՎԻԼ.— Ֆր. Կապ. Խաչի Շավիլի մասնաճիւղի ընդհ. ժողովը՝ Նոյ. 20ին, երկուշաբթի իրիկուն ժամը 9ին, մանկապարտէզի սրահը : Պարտաւորիչ ներկայութիւն :

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Սիամանթօ» խումբի ընդհ. ժողովը այս երկուշաբթի ժամը 21ին, դպրոցին սրահը, 78 rue Rabelais :

ՌՈՄԱՆ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի դասախօսական ժողովները այսուհետեւ տեղի պիտի ունենան ողբացեալ ընկեր Եղիա Յովսէփեանի բընակարանը, չորեքշաբթի երեկոները : Դասախօս՝ ընկեր Ս. Պիլալի :

Դաշնակցութեան 60ամկը պիտի տօնուի Դեկտեմբեր 16ին :

ԱՐԵՒՄՈՒՏՔԻ լսարանին սովորական գումարումը այս երկուշաբթի երեկոյ, Քաֆէ Րէժանի վերնայարկը : Կը խօսի ՀԱՅՐ Պ. ՎՐԴ. ԱԴԱՄԵԱՆ, Քէսապի կաթողիկէ համայնքին հոգեւոր հովիւը, Մօտաւոր Արեւելքի հայ գաղութներու վիճակին վրայ :

Հ. Յ. Դ. ԺՈՂՈՎՆԵՐ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէն ընդհանուր ժողովի կը հրաւիրէ.—
Այս Երկուշաբթի իրիկուն Ակնունի ենթակոմիտէն, Համազասպ ենթակոմիտէն, Թաթուլ եւ Արամ խումբերը : Ակնունիի հաւաքատեղին :

Ներկայ պիտի ըլլայ ընկեր Վ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆ, ընկերակցութեամբ Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչին :



Imprimerie DER AGOPIAN 17 rue Damesme - (13)
Le Gérant : A. NERCESSIAN



ՕՐԱԹԵՐԹ

LE PREMIER QUOTIDIEN ARMENIEN EN EUROPE
HARATCH
Fondé en 1925
R. C. S. 376.286
Directeur-Propriétaire : SCH. MISSAKIAN
17, Rue Damesme — PARIS (13)
Վեցամսեայ 800 ֆր., Տար. 1600, արտ. 2500 ֆր.
Tél. GOB. 15-70 Գին 7 Ֆր. C. C. P. Paris 1678-63
Vendredi 24 Novembre 1950 Ուրբաթ 24 ՆՈՅԵՄԲԵՐ

26րդ ՏԱՐԻ — 26e Année No. 6314 — Նոր շրջանի թիւ 1725
Խմբագիր՝ Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

ՄԵՐ ԽՕՍՔԸ

## ՑԱՆՔԸ ԵՒ ԲԵՐՔԸ

Ի՞նչ կ'ըսէ Բարեգործականի երբեմնի վարիչ-պատուիրակը, Նիսի գեղածիծաղ ափերէն :

« Երախտամոռացները» խորագրով գրութեան մը մէջ, «հին հաշիւներ» պրպտելով, կը յանգի «որոշ եզրակացութեանց, ոմանք վերին աստիճան հոգեպարար, ուրիշներ ալ չափազանց մտալլկիչ», (Սուրիա, 3 Հոկտ.) :

— « Այս վերջիններուն ամէնէն տխուրն ու ուշագրաւը Բարեգործականի հանդէպ ընդհանրապէս ցոյց տրուած ապերախտութիւնն է : Ցաւով ափսոսալով խորհած եմ որ, եթէ այս համազգային կազմակերպութենէն երախտաւորեալ բիւրաւոր նպաստընկալները պարտահատոյց ըլլալու տարրական բարեխղճութիւնը ունեցած ըլլային, Հ. Բ. Ը. Միութիւնը այսօր տասնապատիկ ընդարձակուած և զօրացած կ'ըլլար աներկբայօրէն» :

Աւելի մանրամասնելով այս ապերախտութեան պարագաները, Հանգստեան կոչուած վարիչ-պատուիրակը դառնօրէն կ'ողբայ թէ «վրատահարար մատի վրայ կը համրուին» անոնք որ պարտահատոյց եղած, անդամագրուած կամ որեւէ ձեւով օժանդակած են Միութեան :

Այս առթիւ մասնաւորապէս կը յիշէ «բազմահազար որբերը զոր Միութիւնը գնաց փնտռել եւ ձերբակալել ? անապատներուն մէջ», անհամար ուսանողները, եղերաբախտ տարագիրները : Նոյն իսկ Նուպարեան եւ Մելքոնեան սաները :

— ... Ինքզինքս ո՛րքան երջանիկ պիտի զգայի, իբրեւ ծերութեանս փառապսակը, եթէ հաւաստիք տրուէր ինծի որ անոր բարերարեալներուն գոնէ տասնէն մէկը անդամ է արդէն, սրտանց կ'աշխատի անոր բարգաւաճումին համար» :

Զանց կ'առնենք ուրիշ յայտարարութիւններ եւ մանաւանդ ինքնագովութեան սմնեղուկ եւ սնամէջ մարգանքները — « գործատեղիիս մէջ գամուած իմ խանդակաթ հոգածութիւնս անջրպետներէն անդին կ'երթար տարածուիլ... «Գիշեր ցորեկ անոնց մասին մտածելով, բանաստեղծի հոգիովս յորդազեղ »...

Եզրակացութիւնը — իր իսկ բառերով.

— « Այս ժխտական երեւոյթը կեանքիս մեծագոյն յուսախաբութիւնը եղած է :

« Եւ անով կը բացատրուի մասամբ թէ ինչո՛ւ «Բարեգործականը» օրհնանուն հիմնադիրներուն երազած «Հայկական Ընդհանուր Միութիւնը չկրցաւ ըլլալ տակաւին» :

Անշուշտ չէր կրնար ըլլալ, եւ այսուհետեւ շատ աւելի դժուար է որ կարենայ ըլլալ :

Անհրաժեշտ չէ բանաստեղծի «յորդազեղ հոգի» ունենալ, հասկնալու համար այս դառն յուսախաբութեան հիմնական պատճառները :

Երէկ համառօտակի պարզեր էինք այն մթնոլորտը, որ կը տիրապետէ Բարեգործականի ղեկավարութեան մէջ, սկիզբէն ի վեր : Մթնոլորտ մը սահմանափակ եւ սառուցեալ, ուր հոգիները կը ցամքին, եւ միտքերը կը կծկուին :

Ըսենք, մէկ բառով, որ Բարեգործականը հորիզոն չունի : Այսինքն չունի տեսադաշտ՝ համապատասխան իր կոչումին, դիրքին և նիւթական հնարաւորութեանց :

Չի բաւեր դրամ դիզել, կտակներ եւ կալուածներ հաւաքել, եւ բաշխումներ կատարել համաձայն կանխորոշ ծրագրի մը :

Չի բաւեր գումարներ տրամադրել անմիջական կամ ընթացիկ հոգերու համար :

Այս ժողովուրդը որբանոցներ, դպրոցներ, բուժարաններ եւ հիւանդանոցներ պահած է տարիներով, երբ ոչ Բարեգործական կար, ոչ ալ միլիոնաւոր տոլար կամ ստերլին :

Անշուշտ Բարեգործականը գործօն ազդակ մը եւ հոսուն աղբիւր մը դարձաւ, աւելի լայն եւ ամուր հիմերու վրայ դնելու համար եղբայրական օգնութեան գործը :

Մարդասիրական եւ կրթական գործունէութեան ներկայ դրութիւնը կը համապատասխանէ՞ մեր իրական պահանջներուն : Կը լրացնէ՞ զանոնք : Մանաւանդ նկատի առնելով Բարեգործականի անսպառ աղբիւրները :

Միութեան հին կամ նոր վարիչները ինչո՞ւ կը զարմանան որ «բարերարեալներն» անդամ չեն անդամագրուիր :

Իրենցն էր ցանքը : Ահա բերքը : Շ.

# ՕՐԸ ՕՐԻՆ

### ՄԵՐ ԲԱՑԱՌԻԿՆԵՐԸ — «ԱՐՄԵՆԻԱ»

Դաշնակցութեան 60ամեակին առթիւ, երկրորդ բացառիկ թիւը, շատոնց լոյս տեսած, Պուէնոս Այրէսի «Արմէնիա»ն է :

Տասնըչորս մեծադիր էջերէ կը բաղկանայ այս հրատարակութիւնը, զարդարուած աւելի քան 60 նկարներով եւ խմբանկարներով : Տպագրութիւնն ալ՝ գոյնզգոյն, — ոսկի, կապոյտ, կարմիր, նարնջագոյն, կանանչ եւն. :

Առաջին էջին վրայ՝ Դաշնակցութեան երրորդութիւնը. վերջին էջին մէջտեղը՝ զինանշանը :

Նիւթերուն մէջ լայն տեղ կը բռնեն արտատպումներ՝ ծանօթ գրողներէ,— Դէպի երկիր (Ակնունի), Անցեալ դէմքեր (Ա. Շիրվանզադէ), Գ. Խաժակի վերջին նամակը եւն. :

Թերթին խմբագիրը, Վ. Գէորգեան, ունի փառաբանական տաղ մը, Հ. Յ. Դաշնակցութիւն, ճիշդ երկու սիւնակ :

Ովսաննա՜ քեզ... քեզ ծնող ժողովուրդին հերոսական ...

Խումբ մը երիտասարդներ ստորագրած են յուշեր եւ տպաւորութիւններ՝ որոնք հաճութեամբ կը կարդացուին :

Ինչպէս Թէհրանի « Ալիք »ը, այս բացառիկն ալ չի պարունակեր հում նիւթեր՝ շրջանի կուսակցական կազմակերպութեան մասին : Արձանագրուած են միայն անհետացող դէմքերը :

Եթէ ժամանակ չկար ամբողջ հարաւ. Ամերիկայի մասին խօսելու, կը կարծենք թէ դժուար չէր ներկայացնել գոնէ Արժանթինի շրջանը :

Միջանկեալ յիշելով այս պարագան, կը շնորհաւորենք Արժանթինի մեր ընկերները, այս բացառիկ ճիգին համար : ՎԱՀԷ

### ՏԱՐԱԳԻՐ ԵՐԻՏԱՍԱՐԴՆԵՐԸ ԶԻՆՈՒՈՐ ԿԱՌՆՈՒԻՆ ԱՄԵՐԻԿԱՅԻ ՄԷՋ

Վերջին մէկ - մէկուկէս տարուան ընթացքին Գերմանիայէն եւ Աւստրիայէն Ամերիկա փոխադրուած հայ տարագիրներու մէջ կային նաեւ զինուորական տարիք ունեցող հարիւրէ աւելի հայ երիտասարդներ (19—21 տարեկան) :

Անձնական նամակէ մը կը տեղեկանանք թէ բոլոր այս երիտասարդները ստացած են իրենց զինուորական թուղթերը եւ մօտ օրէն պիտի անցնին բժշկական քննութենէ : Եւ, այս նախապատրաստական ձեւակերպութեանց աւարտումէն վերջ, անոնք պիտի առնուին ամերիկեան բանակի մէջ, իրենց զինուորական ծառայութիւնը կատարելու համար :

Այս կարգադրութեան ենթակայ են նաեւ ուրիշ ազգերու պատկանող տարագիր երիտասարդները :

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ Բ. ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ վերջացաւ չորեքշաբթի օր, վեց օր տեւելէ վերջ : Ամէնէն կարեւոր որոշումներէն մէկն է համաշխարհային մնայուն խորհուրդ մը ստեղծել, հսկողութիւն կատարելու համար Միացեալ Ազգերու գործունէութեան վրայ, «որպէսզի կատարէ իր առաքելութիւնը մարդկութեան առջեւ» : Այս խորհուրդին մէջ ներկայացուցիչներ պիտի ունենան բոլոր ժողովուրդները, նոյնիսկ ոչ-անկախ երկիրներու կամ գաղթավայրերու բնակիչները, ինչպէս եւ բոլոր մշակութային կամ կրօնական կազմակերպութիւնները : — Համագումարը չքանչաններ եւ պարգեւներ ալ բաժնեց գրականութեան եւ արուեստի այն վաստակաւորներուն որոնք իրենց տաղանդը ի սպաս դրած են խաղաղութեան : Հինգ միլիոն ֆրանք պիտի ստանան Սպանիացի նկարիչը՝ Փիքասօ եւ ամերիկացի սեւամորթ երգիչը՝ Փօլ Րոպէսըն : Պարգեւ մըն ալ սահմանուած է Թուրք բանաստեղծ Նազըմ Հիքմէթի, որուն բանաստեղծութեանց մէկ հատորը պիտի հրատարակուի Փարիզի մէջ :

76 ԱՆԳԼԻԱՑԻ երեսփոխաններ բանաձեւ մը քուէարկեցին, որով կը քննադատեն արտաքին նախարարին «անշարժութիւնը» եւ կը պահանջեն անմիջապէս միջոցներ ձեռք առնել, բանակցելու համար Խ. Միութեան հետ, միջազգային հարցերու մասին :

## Թուրքիոյ պաշտպանութիւնը Անգլիոյ յանձնուած

Պոլսոյ «Ազգամ» թերթին մէջ հրատարակուած գրութեամբ մը, նախորդ արտաքին գործավարը, Նէճմէտտին Սատըք դիտել կու տայ թէ Մ. Նահանգները բազմազան հոգեր ստանձնած ըլլալով ամբողջ երկրագունդին մէջ, Մեծն Բրիտանիոյ յանձնած են Միջին Արեւելքի պաշտպանութիւնը :

Նոյն աղբիւրին համաձայն, Անգլիա ընդունած է այս հոգը, որով Թուրքիոյ հետ ունեցած զինակցութիւնը կարեւոր դեր մը պիտի կատարէ այս պաշտպանութեան մէջ :

Ուրեմն արեւելեան Միջերկրականի պաշտպանութեան խնդիրը պիտի լուծուի Մեծն Բրիտանիոյ գործօն մասնակցութեամբ : Այս յանձնառութեամբ, կը թուի թէ Անգլիա ետ կեցած է Միջերկրականի պաշտպանութեան զինուորական խարիսխները մինչեւ Քենիա եւ արեւելեան Ափրիկէ փոխադրելու ծրագրէն, եւ իր ուժերը պիտի կեդրոնացնէ Մօտաւոր Արեւելքի մէջ, ինչպէս կ'ապացուցանէ Եգիպտոսի հանդէպ բռնած դիրքը :

Լորտ Վէնսիթթարթ, Մ. Բրիտանիոյ արտաքին նախարարութեան նախկ. խորհրդականը ըսաւ թէ պէտք է պատրաստ ըլլալ երրորդ աշխարհամարտի մը համար եւ առնուազն 60 զօրաբաժիններ պահել Արեւմտեան Գերմանիոյ մէջ : Խ. Միութիւնը, այսօր, ռազմական մեծագոյն ուժը ունենալով, պատերազմ պիտի հռչակէ երբ ժամանակը գայ : «Եթէ արագ շարժինք, տակաւին ուշ չէ արգիլելու արշաւանք մը Գերմանիոյ վրայ, ինչ որ պիտի նշանակէր նոր աշխարհամարտ մը : Զխաբենք մենք մեզ խորհելով թէ երրորդ աշխարհամարտ մը անխուսափելի չէ : Կացութիւնը վտանգաւոր է : Ու մինչ 60 զօրաբաժիններու պէտք ունինք, ներկայիս մեր ունեցածը հազիւ 20 զօրաբաժնի կը հասնի : Վտանգի տակ է մեր ազգային գոյութիւնը, բայց տակաւին կարելի է զայն փրկել» :

### ՌՈՒՍԵՒՊԱՐՍԻԿ ՄԵՐՁԵՑՈՒՄԸ

Թէհրանէն կը հեռագրեն թէ Ալի Ռազմարայի կառավարութիւնը, որ նախապէս Ամերիկայի կողմը կը բռնէր, այժմ լրջօրէն կ'աշխատի մօտենալ Խ. Միութեան եւ փարատել անոր կասկածները : Վերջերս կնքուած առեւտրական դաշնագիրը ջերմ ընդունելութիւն գտաւ ժողովուրդին, մամուլին եւ խորհրդարանին մէջ : Ռուսական քարոզութիւնը գետին կը շահի ամէն ուղղութեամբ : Թէ Ամերիկացիները եւ թէ Պարսիկները կը խոստովանին թէ Ամերիկայի տնտեսական եւ զինուորական կիսկատար օգնութիւնը բաւական չէ հակազդելու այս թափանցումին :

Ինչպէս հաղորդած էինք արդէն, Թէհրանի ռատիոն այլեւս չի հաղորդեր «Ամերիկայի Ձայն»ը : Միւս կողմէ, նոր սեղմումներ հաստատուած են օտարականներու դէմ : Նոյնիսկ զրոյց կը շրջի թէ պիտի արձակուին անցեալ տարի բանտարկուած համայնավարները :

Նոյն աղբիւրին համաձայն, Պարսկաստան կը սպասէ որ Ամերիկացիները փութացնեն իրենց տնտեսական օգնութիւնը, բայց արեւմտեան դիւանագէտներու կարծիքով, եթէ Խ. Միութիւնը գետին գրաւէ իրանեան գործերուն մէջ, անկարելի պիտի ըլլայ հեռացնել զայն եւ Ամերիկա պիտի կորսնցնէ քարիւղի պաղ պատերազմը :

## Անգլիա կը մերժէ զէնք ծախել Եգիպտոսի

Պ. Չըրչիլ խօսք առնելով երեսփ. ժողովին առջեւ ներկայացուց բանաձեւ մը դատապարտելու համար արտաքին նախարար Պ. Պեւինը, որ մերժած էր կեցնել զէնքի եւ ռազմամթերքի առաքումը Եգիպտոս : Վիճաբանութիւններէ վերջ, Պ. Պեւին յայտարարեց, թէ կառավարութիւնը, անդրադառնալով իր նախկին որոշման, կ'որոշէ յետաձգել առաքման համար պատրաստ հրասայլերու Եգիպտոս առաքումը, սպասելով այն բանակցութեանց, որոնք պիտի կատարուին յառաջիկայ շաբթու, Եգիպտոսի արտաքին նախարարին հետ, Լոնտոնի մէջ : Այս որոշումը կը վերաբերի նաեւ ուրիշ զէնքերու, որոնց առաքումը ընդհատուած էր անցեալ Օգոստոսէն ի վեր :

Պահպանողական կուսակցութիւնը բոլորովին հակառակ է ամէն տեսակ զէնքի եւ ռազմանիւթի Եգիպտոս առաքման, մինչեւ որ այս վերջինը միանգամ ընդմիշտ ճշդէ իր դիրքը անգլեւեգիպտական դաշնագրին հանդէպ : Պահպանողականները, առ հասարակ հակառակ են զէնք ղրկելու որեւէ երկիր, բացի Ատլանտեանի դաշինքին անդամակցող երկիրներէն, մինչեւ որ իր սեփական պահանջները չգոհացուին : Աշխատաւորական երեսփոխան մըն ալ պաշտպանելով առաքումները դադրեցնելու տեսակէտը, ըսաւ որ ղրկուելիք զէն-

(Լուրերու շարունակութիւնը կարդալ Դ. էջ)

ղեկավարին այն հատուածին վրայ, որուն համաձայն Հնդկաչինի մասին զօր. Ռըվէրի մէկ տեղեկագիրը անցած է Վիէթ–Մինհի մարդոց ձեռքը, Ֆրանսական հակալրտեսական սպասարկութիւնը գործած է կարգ մը անկանոնութիւններ, որոնց կարգին այրուած են կարգ մը ապացոյցներ եւ վերջապէս ոստիկանութեան մեղսակցութեամբ, Փէյրէ (գործակալը) յաջողած է Հարաւային Ամերիկա փախիլ: Համայնավարներու կարծիքով, այդ շրջանի ներքին նախարարը Պ. Ժիւլ Մոք պատասխանատու է այս անկանոնութեանց համար:

Խորհրդարանական շրջանակներու մէջ, սակայն, բոլորովին անհաւանական կը նկատեն, թէ համայնավարներու առաջարկը մեծամասնութիւն պիտի կրնայ ապահովել ազգային ժողովին մէջ: Կը կարծուի այսուհանդերձ, թէ Պ. Մոքի Ռուշինկթընի մէջ տարած քաղաքականութենէն դժգոհ կարգ մը ուրիշ երեսփոխաններ ալ կը ձայնակցին համայնավարներուն, կատարուելիք գաղտնի քուէարկութեան ընթացքին: Եթէ առաջարկին ի նպաստ քուէարկողները կարեւոր թիւ մը ներկայացնեն, փափուկ կացութիւն մը պիտի ստեղծուի Պ. Մոքին համար, որ կրնայ հրաժարելու հարկադրանքին տակ գտնուիլ:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԱՐԵՒՄՏԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ վարչապետ Տոքթ. Ատընաուըրի համաձայն, Դաշնակիցները պէտք է «ապահովութեան դաշնագիր» մը կնքեն Գերմանիոյ հետ, վերջ տալով գրաւման գոյավիճակին, նկատի ունենալով, որ 55 պետութեանց հետ հաշտութեան դաշնագրի մը կնքումը երկար ժամանակի կը կարօտի:

ԵՒՐՈՊԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴԸ Սթրազպուրկի մէջ, 7ի դէմ 83 ձայնով եւ 19 ձեռնպահութեամբ որոշեց պետութեանց յանձնարարել գերմանական մասնակցութիւն մը եւրոպական բանակի մէջ, հաւասար իրաւունքներով: Ֆրանսական եւ գերմանական պատուիրակները, փոխադարձ զիջումներու շնորհիւ, քուէարկեցին ի նպաստ այս բանաձեւին եւ ժողովի նախագահը, Պ. Սփաաք, այս երեւոյթէն խանդավառուած յայտարարեց, թէ «գերման եւ ֆրանսական ճշմարիտ հասկացողութեան ճշմարիտ սկզբնաւորութիւնը եղաւ այս օրը»:

ԳԻՆԵՐՈՒ յարաճուն բարձրացումը մտահոգութիւն կը պատճառէ եգիպտական կառավարական շրջանակներուն: Մասնաւորաբար կը սղեն միսի, ալիւրի, իւղի եւ կանանչեղէններու գիները: Կառավարութիւնը որոշեց անհրաժեշտ վարկերը տրամադրել սննդամթերքի ներածումներուն համար: Արգիլեց նմանապէս արմտիքի արտածումը: Գիներու բարձրացման առաջքը առնելու համար էր արդէն, որ անցեալները որոշուած էր հրապարակներու վրայ խարազանել բոլոր չահագէտները:

ԲՐԻՏԱՆԱԿԱՆ կառավարութեան կողմէ հրասայլերու եւ այլ զէնքերու առաքման դէմ դրուած արգելքը ծանր տպաւորութիւն առաջ բերած է Եգիպտոսի մէջ, մանաւանդ որ անոնց արժէքին 100ին 80ը կանխիկ վճարուած է: Պաշտօնական շրջանակները չեն ծածկեր կացութեան ծանրակշիռ հանգամանքը: Արտաքին փոխ–նախարարը այս առթիւ ալ յայտարարեց, թէ եգիպտացի ժողովուրդը, ոչ մէկ պարագայի տակ պիտի հրաժարի իր ազգային պահանջներէն:

ԱՄԵՐԻԿԵԱՆ եւ եուկոսլաւ կառավարութեանց միջեւ գոյացած համաձայնութեամբ, Եուկոսլաւիա, Մ. Նահանգներու կողմէ իրեն տրամադրուած սննդամթերքին մէկ մասը պիտի ստանայ նախքան ամերիկեան խորհրդարանին որոշումը, պայմանով որ այդ սննդամթերքը գործածուի միայն եւ միայն եուկոսլաւ ժողովուրդի եւ բանակի կարիքներուն համար:



**Imprimerie DER AGOPIAN** 17 rue Damesme - (13)

**Le Gérant : A. NERCESSIAN**

# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ 60ԱՄԵԱԿԸ

## Փարիզի մէջ

Կը տօնուի մեծ շուքով Դեկտեմբեր 10ին, կիրակի իրիկուն Mutualitéի մեծ սրահը:

Նախագահութեամբ՝

Ընկեր ՌՈՒԲԷՆ ՏԷՐ ՄԻՆԱՍԵԱՆԻ

Մանրամասնութիւններ յաջորդով:

## Մեծ պարահանդէս

Կազմակերպուած Ալֆորվիլի Ֆ. Հ. Մ. Ը. Մ.ի կողմէ, 2 Դեկտ., շաբաթ գիշեր, ժամը 9էն մինչեւ լոյս՝ Moulin Brûléի պարասրահին մէջ:

Mimi Pinsonի Typique Tango նուագախումբով, (7 երաժիշտ, մէկ երգիչ): Գեղարուեստական ճոխ բաժին, Զաւեշտ եւ անակնկալներ:

Հաղորդակցութեան միջոց.— Charenton - Ecolesէն առնել 107 թիւ օթօպիւսը եւ իջնել Moulin Brûlé:

### ԱՑՆՃԱՐԻ «ՅԱՌԱՋ» ՎԱՐԺԱՐԱՆԻՆ ՀԱՄԱՐ

Իսի լէ Մուլինոյի հայ պտղավաճառները (մարշէճի) 3900 ֆրանք կը նուիրեն Այնճարի Յառաջ վարժարանին, փոխան ծաղկեպսակի ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ԵՐԱՆՈՒՀԻ ՀԱՃԻ ՅԱԿՈԲԵԱՆԻ մահուան առթիւ: (Սթանօզցի):

Eaubonneէն Պ. Նիքօթեան եւս հազար ֆր. կը նուիրէ նոյն հաստատութեան:

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Պ. Գամեր Գաբամաճեան կը ծանուցանէ թէ մասնաւոր հոգեհանգիստ պիտի կատարուի այս կիրակի Փարիզի Հայոց եկեղեցին իր մօր՝ ողբացեալ ՊԻՍՏՈՍ Ս. ԳԱԲԱՄԱՃԵԱՆԻ մահուան երկրորդ տարելիցին եւ հօրը ՍԻՄՈՆ ԳԱԲԱՄԱՃԵԱՆԻ յիշատակին: Կը հրաւիրուին բարեկամները եւ անոնց յիշատակը յարգողները:

### ԹԷՅԱՍԵՂԱՆ ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Ֆ. Կ. Խաչի Ալֆորվիլի մասնաճիւղի, այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, Café des Sportsի մէջ, 157bis, rue Jean Jaurès, Maison Alfort:

Կը ներկայացուի խիստ ծիծաղաշարժ զաւեշտ մը

Երգ եւ զանազան անակնկալներ:

Ծախքերու մասնակցութեան համար մուտք 75 ֆր.

Հաղորդակց. միջոց.— Charenton Ecolesէն առնել թիւ 181 հանրակառքը եւ իջնել վերջին կայարանը:

## Նոր Սեռունդի խնջոյքը

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Ահարոնեան» խումբի կողմէ, կիրակի, 3 Դեկտ. ժամը 4էն 10, Studio Colibriի մէջ, 19a, rue Caumartin: Ընկերական հաճելի մթնոլորտ: Հայկական պար ու նուագ, առատ կեր ու խում մատչելի գիներով:

Կը հրաւիրուին բոլոր Նոր Սերունդի համակիրները:



Օր. ՀԻԼՏԱ ԹԱՇՃԵԱՆ

Պ. ԺԱՔ ԳԱՍԱՊԵԱՆ

Ամուսնացած

Վիշի 25 Նոյեմբեր 1950 Փարիզ

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

Հ. Յ. Դ. ԵԳԻՊՏԱՑԻ կոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր խումբերու խմբապետները եւ քարտուղարները այս չորեքշաբթի գիշեր Cadetի ծանօթ հաւաքատեղին:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խումբի ժողովը այս երեքշաբթի ժամը 8.30ին, սովորական հաւաքատեղին: Կը դասախօսէ ընկեր Յ. ԱԴԱՄԵԱՆ: Նիւթը «Յարութիւն Շահրիկեան եւ Բարենորոգումներու հարցը»:

ՊԱՆԵԽՕ ՔԱՇԱՆԻ «Արծիւ» ենթակոմիտէի հերթական ժողովը այս երկուշաբթի իրիկուն ժամը 9ին, 17 rue Ampère, ընկեր Ալթունեանի բնակարանը: Ներկայ կ'ըլլայ Կ. Կ.ի ներկայացուցիչը: Ըլլալ ճշդապահ:

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Պուլ. Օտտոյի դասախօսութիւնը՝ այս երեքշաբթի իրիկուն ժամը 9ին, սովորական հաւաքատեղին: Դասախօս ընկեր ԹԱԴՈՅԵԱՆ: Կը հրաւիրուին համակիրները եւ ընկերները:

ԱՐԵՒՄՈՒՏՔԻ լսարանին շաբաթական հաւաքոյթը այս երկուշաբթի երեկոյ Քաաէ, քաֆէ Ռէժանի վերնայարկը: Զեկոյց՝ Պ. ԿԱՐՕ ԳԷՈՐԳԵԱՆԻ: Նիւթը՝ Այսօրուան Գերմանիան: Մուտքը ազատ է:

ԾՆՈՒՆԴ.— Գառնիկ Տնկոյեան ուրախութեամբ կը ծանուցանէ ծնունդը իր քրոջ՝ ՌԷԺԻՆ ՏՆԿՈՅԵԱՆԻ:

